Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 5 (107)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1941

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 5 (107)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1941

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





# ՄԱՐՏԻ 8-Ը ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՕՐՆ Է

*(ՆՅՈՒԹԵՐ ԶԵԿՈՒՅՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ)*

*Մարտի 8-ը կանանց միջազգային կոմունիստական օրն է, ամբողջ աշխարհի աշխատավոր կանանց մարտական ուժերի համախմբման, կնոջ իրավահավասարության և երջանիկ կյանքի համար մղվող պայքարի մարտական տոնը։*

*Ցեոդալիզմի և կապիտալիզմի շահագործման դարի օրենքն աշխատավոր կանանց դարեր շարունակ հարստահարման է ենթարկել և այժմ էլ հարստահարում է ու նվաստացած վիճակում պահում բոլոր կապիտալիստական երկրներում։*

Կապիտալիստական ստրկությունից կնոջ ազատագրման ուղին ցույց է տվել միայն բոլշևիկների մեծ պարտիան: Դեռևս ընդհատակի տարիներին, Լենինի-Ստալինի պարտիան կազմակերպում էր աշխատավոր կանանց, պայքարի հանում ցարիզմի և կապիտալիզմի դեմ:

***

Մարտի 8-ը կանանց ազատագրական պայքարի մարտական օրն է, որը սահմանվել է դեռ 1910 թվին:

1910 թվին, Դանիայի Կոպենհագեն քաղաքում գումարվեց կանանց միջազգային երկրորդ կոնֆերանսը, որը խոշոր պատմական նշանակություն ունեցավ միջազգային պրոլետարիատի ռևոլյուցիոն շարժումների պատմության մեջ: Այդ կոնֆերանսի կազմակերպիչն ու ղեկավարը եղել է գերմանական նշանավոր կին ռևոլյուցիոներ, Լենինի մոտիկ բարեկամ և զինակից, բոլշևիկ Կլարա Ցետկինը: Կլարա Ցետկինի առաջարկությամբ, կոնֆերանսում որոշում ընդունվեց— մարտի 8-ը տրադիցիոն կերպով տոնել որպես կանանց միջազգային կոմունիստական օր: Կոնֆերանսի որոշման մեջ



մատնանշված է, որ կանանց միջազգային կոմունիստական օրվա անցկացման խնդիրն է՝ ամբողջ աշխարհի աշխատավոր կանանց, որոնք շահագործվում են կապիտալիզմի ծանր լծի տակ, համախմբել Լենինի բոլշևիկյան պարտիայի դրոշի տակ, մոբիլիզացիայի ենթարկել՝ պայքարելու բուրժուազիայի տիրապետության դեմ, պրոլետարական ռևոլյուցիայի և սոցիալիզմի հաղթանակի համար:

Առաջին անգամ, կանանց միջազգային կոմունիստական օրը տոնվել է 1911 թվին Գերմանիայում, Ավստրիայում, Դանիայում և Շվեցարիայում: Ռուսաստանում կանանց միջազգային կոմունիստական օրը տոնվում է սկսած 1913 թվից:

1913 թվի մարտի 8-ին, բոլշևիկյան «Պրավդա» թերթի ամբողջ համարը նվիրված էր կանանց միջազգային օրվան: Այդ համարում տպված էր Ռուսաստանի աշխատավոր կանանց ուղղված պետական դումայի բոլշևիկյան ֆրակցիայի ողջույնը, որի մեջ բոլշևիկյան ֆրակցիան բոլոր աշխատավորուհիներին կոչ էր անում՝ պայքարի ելնել կնոջ ազատագրության ու իրավահավասարության համար: Պետերբուրգում

մարտի 8-ին բոլշևիկների ղեկավարությամբ կազմակերպվեց միտինգ, որին մասնակցում էին ավելի քան 3000 կանայք։ Այդ միտինգում ելույթ ունեցան բոլշևիկները, որոնք իրենց կրակոտ ճառերում մոբիլիզացիայի էին ենթարկում կանանց՝ համախմբվելու ռևոլյուցիոն պրոլետարիատի շարքերում, պայքարի ելնելու ռուսական ցարիզմի և կապիտալիզմի դեմ։

1914 թվին կանանց միջազգային կոմունիստական օրը տոնեցին Պետերբուրգի, Մոսկվայի, Սամարայի, Սարատովի, Իվանովոյի, Կիևի բանվորները։ Պետերբուրգում սկսվեց հրատարակվել «Ռաբոտնիցա» (Աշխատավորուհի) ժուռնալը, որը լուսաբանում էր Ռուսաստանի աշխատավոր կանանց կյանքի, աշխատանքի ու պայքարի խնդիրները։ Իմպերիալիստական պատերազմի տարիներին, բոլշևիկներն օգտագործում էին կանանց լեգալ կազմակերպությունները, պատերազմի դեմ պայքարելու, իմպերիալիստական թալանչիական պատերազմը՝ քաղաքացիական պատերազմի վերածելու մարտական լոզունգի շուրջը կանանց համախմբելու համար։

Բայց ռուսական ցարիզմը և կոնտրռևոլյուցիոն բուրժուազիան հանգիստ կերպով



չէին դիտում կանանց ռևոլյուցիոն շարժումները։ 1917 թվին, երբ ռևոլյուցիոն կանայք մարտի 8-ի տոնակատարության պատրաստություններ էին տեսնում, ոստիկանությունը կատաղի հարձակում սկսեց նրանց դեմ։

Պետերբուրգում, մարտին, կազմակերպվեց կանանց մեծ ցույց «Կորչի պատերազմը», «Խաղաղություն և հաց» լոզունգներով։ Ոստիկանությունը հարձակվեց ցուցարարների վրա և տեղի ունեցավ ուժեղ ընդհարում։ Կանանց շարժումը, բոլշևիկների ղեկավարությամբ, գնալով ավելի լայն ծավալ էր ընդունում և միանում ռուսական հերոսական պրոլետարիատի սկսած փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի ընդհանուր ալիքին։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի պատմական օրերին, ընդհատակի տարիներին դաստիարակված և կոփված բազմաթիվ ռևոլյուցիոն կանայք՝ զենքը ձեռքներին, Պետրոգրադում, Մոսկվայում և ուրիշ քաղաքներում, բարիկադների վրա, հերոսաբար մարտնչում էին կապիտալիզմի դեմ, պրոլետարիատի դիկտատուրայի հաղթանակի համար, կնոջը ստրկական վիճա-

կից վերջնականապես ազատագրելու համար։

Հետո քաղաքացիական կռիվների թեժ օրերին, շատ-շատերը, ինչպես Առաջին հեծյալ բանակի հերոսական արշավների մասնակից Զինայիդա Պատրիկեևան — Կարմիր Բանակի մարտական շարքերում կռվում էին սովետական երիտասարդ պետության ամրապնդման համար։

Կաբարդինո-Բալկարիայի Մուղեկ Էլմիզովան թաղելով սպիտակների կողմից ըսպանված իր ամուսնուն ու տղաներին, մըտավ պարտիզանական ջոկատ։

«Ես արդեն 75 տարեկան էի,— ասում է Էլմիզովան։— Ես օգնում էի վիրավորներին, կերակրում էի մարտիկներին։ Իմ ձեռքերն ավելի ամուր էին դարձել և աչքերս՝ հեռատես։ Ջոկատում մենք հրացաններ քիչ ունեինք, բայց մարտիկները հաճախ հանձնարարում էին ինձ հրացանը ձեռքիս կանգնել լեռներում և թույլ չտալ թշնամուն մոտենալու։ Ինչքան կարող էի, ես շարունակում էի պայքարել այն բանի համար, ինչի համար ընկավ իմ ընտանիքը»։

Մեր հայրենիքի պատմությունը կանանց անօրինակ հերոսության և հայրենասիրու-



թյան այդպիսի բազմաթիվ օրինակներ գիտէ։

1920 թվի հունվարի 4-ին, Օդեսայում, սպիտակ-գվարդիական ռազմական դաշտային դատարանը մահվան դատապարտեց երիտասարդ բոլշևիկ Դորա Լյուբարսկայային, որը երկար ժամանակ գազանային տանջանքների էր ենթարկվել բանտային կամերաներում։

Մահվանից առաջ, Դորան գրել է սրտառուչ տողեր.

«Փառապանծ ընկերներ, ես մեռնում եմ պատվով, ինչպես պատվով ապրեցի իմ փոքրիկ կյանքը։ Ութ օրից հետո ես կդառնամ քսան երկու տարեկան, իսկ երեկոյան ինձ գնդակահարելու են։ Ինձ համար ցավալի չէ, որ այդպես կընկնեմ։ Ցավալի է, որ ես քիչ բան արեցի ռևոլյուցիայի համար... Այսօր վերջին անգամ թերթ կարդացի։ Բերիսլավլում, Պերեկոպում արդեն հարձակվում են։ Շուտով, շուտով ամբողջ Ուկրայինան շունչ կքաշի և կսկսի կենդանի, ստեղծագործական աշխատանքը։ Ցավալի է, որ չեմ կարող նրան մասնակցություն ունենալ։ Մնաք բարով, եղեք երջանիկ...»։

Ռևոլյուցիան Դորա Լյուբարսկայայի նր-

ման հազարավոր հերոս կանանց կյանքի ընդերքից մղեց պայքարի թատերաբեմը, որոնք մինչև իրենց կյանքի վերջին րոպեն կռվեցին և իրենց երիտասարդական տաք արյունը առատորեն թափեցին աշխատավորների ազատության համար, այսօրվա երջանիկ և ուրախ կյանքի համար:

***

Սովետական իշխանությունն իր գոյության առաջին իսկ օրերից ոչնչացրեց բոլոր այն զզվելի օրենքները, որոնք ամրապընդում էին կնոջ ստրկական, ստորացված դրությունը և օրենքով հաստատեց կնոջ և տղամարդու լիակատար հավասարությունը: Սակայն, դրանով սովետական իշխանությունը չսահմանափակվեց: «Հավասարությունն օրենքով հավասարություն չէ կյանքում — ասում է Լենինը: — Մեզ անհրաժեշտ է, որպեսզի կին-աշխատավորուհին ձեռք բերի հավասարություն՝ տղամարդ-աշխատավորի նկատմամբ ո՛չ միայն օրենքով, այլև կյանքում»:

Վլադիմիր Իլյիչը նշում էր, որ կնոջ փաստական ազատագրումը և նրա լիակատար հավասարությունը տղամարդու նկատմամբ հաստատելու համար անհրաժեշտ է, որպեսզի կանայք մասնակցեն սոցիալիստական արտադրությանը և ներգրավվեն պետության ու սոցիալիստական ձեռնարկությունների կառավարման գործում:



Սովետական իշխանության տարիներին մեր պարտիան Լենինի և Ստալինի ղեկավարությամբ այս ցուցմունքներն իրագործել է կյանքում:

Մեր երկրում հիմնականում արդեն իրագործված սոցիալիզմը կառուցվել է միլիոնավոր կանանց ակտիվ մասնակցությամբ:

## ԿՆՈՋ ԱՇԽԱՏԱՆՔԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԵՐԿՐՈՒՄ

Ստալինյան հնգամյակների ընթացքում կանանց թիվը մեր երկրում (բանվորուհիների և կին ծառայողների) ավելացել է ավելի քան 4 անգամ: 1929 թվին նրանց քանակը համասար էր 3 միլիոնի, 1937 թվին՝ 9,4 միլիոնի, իսկ 1940 թվին՝ 11 միլիոնից ավելի, այսինքն ՍՍՌՄ ողջ բանվորների և ծառայողների կազմի 38,4%-ը: 19 միլիոնից ավելի կանայք մասնակցում են կոլխոզային աշխատանքներին:

Ըստ 1897 թ. մարդահամարի տվյալների, ցարական Ռուսաստանում վարձով աշխատող կանանց 80%-ը աշխատում էին որպես

սպասուհիներ, բատրակուհիներ, օրավարձով աշխատողներ, 13%-ն աշխատում էր արդյունաբերության մեջ (գլխավորապես՝ տեքստիլ արդյունաբերության մեջ) և 4%-ը՝ դպրոցներում, գրադարաններում, հիվանդանոցներում, դեղատներում և այլն։ Սովետական իշխանության օրոք կնոջ աշխատանքն այնպիսի ճյուղերում և մասնագիտություններում է թափանցել, որոնք կնոջ համար բոլորովին նոր են հանդիսանում։ Այդ բանին քիչ չի օժանդակել նոր տեխնիկայի ներմուծումը, որը փոխել և հեշտացրել է աշխատանքային պայմանները։

Դեռ 1938 թվին կանայք կազմում էին ամբողջ արդյունաբերության աշխատողների ընդհանուր թվի 24,5%-ը, մետաղամշակման արդյունաբերության աշխատողների՝ 31,1 %-ը, նավթամշակման արդյունաբերության աշխատողների՝ 30,2%-ը։

Սովետական կանայք տիրապետում են այնպիսի մասնագիտությունների, որոնք պահանջում են բարձր որակավորում։ 1939 թվին մետաղամշակման արդյունաբերության մեջ աշխատում էին մոտ 60.000 կին-խառատներ, 24.000 կին-ֆրեզերովշչիկներ, 122.000 այլ դազգահավարուհիներ, 14.000



կին-ինստրումենտալշչիկներ և լեկալշչիկներ, 40.000 կին-փականագործներ և այլն։

Կապիտալիզմի օրոք կինը ներգրավվում է արդյունաբերության մեջ՝ միայն որպես էժանագին բանվորական ուժ։ Մեզ մոտ կրնոջ և տղամարդու աշխատանքը վարձատրըվում է միակերպ։ Դեռ մոտերս, Լիտվայում, բուրժուազիայի տիրապետության օրոք կին-աշխատավորուհին ստանում էր ամսեկան 55—90 լիտա (մեկ լիտան հավասար է 88,7 կոպեկի), այն դեպքում, երբ տղամարդ բանվորի միջին— ամսեկան աշխատավարձը հավասար էր 120—150 լիտայի։ Այժմ Լիտվական ՍՍՌ-ում, ինչպես և ողջ Սովետական Միության մեջ, կնոջ աշխատանքը վարձատրվում է տղամարդու աշխատանքին հավասար, ընդորում ինչպես տղամարդու, այնպես էլ կնոջ աշխատավարձի մակարդակը բարձրացել է ավելի քան 40%-ով։

Տոգորվելով մեր երկրի տնտեսական և պաշտպանական հզորության ամրապնդմանը մասնակցելու ձգտումներով, 1939 և 1940 թ. թ. ընթացքում արդյունաբերության և տրանսպորտի մեջ մտան հարյուր հազարավոր նոր, սովետական կանայք։

108.892 կին, որից 44.156-ը տնտեսուհի, տիրապետել են մի շարք առաջատար երկաթուղագծային մասնագիտությունների։ Դեռ 1938 թվին, առաջին կին-մեքենավարուհի Զինայիդա Տրոիցկայայի նախաձեռնությամբ ստեղծվեց կանանց շոգեքարշային առաջին բրիգադան։ Իսկ այժմ շոգեքարշների վրա աշխատում են որպես մեքենավարներ և օգնականներ ավելի քան 4.000 կին։ Ընդամենը տրանսպորտում աշխատում են արդեն կես միլիոն կին։

Կանանց լայն մասնակցությունը արտադրության մեջ և քաղաքական կյանքում մեզ մոտ ապահովվում է կնոջ և երեխայի շահերի պետական պաշտպանությամբ, հսկայական թվով մանկական հիմնարկների, հասարակական սննդի ձեռնարկությունների և այլնի ստեղծումով։

Հետևյալ թվերը ցույց են տալիս մայրության և մանկության պահպանության կարևորագույն հիմնարկներից մի քանիսի ցայտուն պատկերը։



Մշտական մսուրների տեղերի քանակի աճը

| | |
|---|---|
| 1913 թ. | 550 տեղ |
| 1928 թ. | 62,1 հազար |
| 1939 թ. | 843,5 » |
| 1940 թ. | 890 » |

Ծննդաբերության մահճակալների թվի աճը

| | |
|---|---|
| 1913 թ. | 6824 մահճակալ |
| 1928 թ. | 26.930 » |
| 1939 թ. | 141.606 » |
| 1940 թ. | 145.058 » |

Ստալինյան հնգամյակների տարիների ընթացքում մշտական մսուրների մահճակալների քանակը, (այսինքն՝ չհաշված սեզոնային մանկական մսուրները) աճել է ավելի քան 14 անգամ։

Կալինինո և Իվանովո քաղաքներում մանկամսուրներն սպասարկում են յուրաքանչյուր 6-րդ երեխային։ Խոշոր չափով աճել է նաև մանկապարտեզների և ման-

ղահրապարակների քանակը։ Բազմազավակ մայրերին պետությունը հսկայական օգնություն է ցույց տալիս։ 1936—1939 թ. թ. ընթացքում բազմազավակ մայրերին ցույց տված ֆինանսական օգնությունը կազմում է 3 միլիարդ 184 միլիոն ռուբլի։

Ըստ ոչ-լրիվ տվյալների, 1940 թվի ընթացքում վճարված է մեկ միլիարդ 225 միլիոն 483 հազար ռուբլի։

Պարտիայի և կառավարության՝ մսուրների, մանկապարտեզների, ճաշարանների, լվացքատների քանակի աճի վերաբերմամբ ունեցած անդուլ հոգատարությունը, (այսինքն՝ բոլոր այն ձեռնարկությունների՝ որոնց Լենինը կոմունիզմի բողբոջներ էր անվանում), հնարավորություն է տվել միլիոնավոր կանանց ակտիվ կերպով մասնակցել հասարակական կյանքին, ազատորեն աշխատել և սովորել։

Սովետական կանայք լայն կերպով օգտագործելով իրենց կրթության իրավունքը, ձեռք են բերում գիտություններ և տիրապետում են ամենաբարդ մասնագիտություններին։

10 տարվա ընթացքում, 1928—1938 թ. թ., կանանց տեսակարար կշիռը բարձրագույն ուսումնական հիմնարկներում 1928 թվի 28,1 տոկոսից բարձրացել է մինչև 43,1 տոկոսի, իսկ տեխնիկումներում՝ 37,6 տոկոսից՝ մինչև 51,6 տոկոսի։



Պատրաստված է կին մասնագետների մի ամբողջ բանակ, որոնք այժմ աշխատում են ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում։ Կին ինժեներների և տեխնիկների քանակը դեռ 1935 թ. հարյուր հազարից անցնում էր։ Բժիշկների մեջ կանայք 1939 թվին կազմում էին 60,5 տոկոս, իսկ ուսուցիչների մեջ 1940 թվին՝ 62,2 տոկոս։ Գիտաշխատողների մեջ դեռ 1940 թվի սկզբներին կանայք կազմում էին 37,2 տոկոս (իսկ 1929 թ. կազմում էին միայն 22,8 տոկոս)։

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՀԱՅՐԵՆԱՍԵՐՆԵՐԸ

Սոցիալիզմի կառուցման բոլոր ասպարեզներում կանայք հսկայական ուժ են ներկայացնում. աշխատավոր սովետական կանայք տղամարդկանց հետ ձեռք-ձեռքի տված պայքարում են սոցիալիստական աշխատանքի արտադրողականության բարձրացման համար, մեր հայրենիքի հարստությունների բազմապատկման համար։

Աշխատանքի բարձր արտադրողականության, որակի, խնայողության համար մղվող ամենօրյա պայքարում, քիչ հաղթանակներ չեն, որ պատկանում են կանանց:

Ընկ. Դոմբրովան Օմսկի դեպոյի մեքենավարն է: Ընկ. Դոմբրովայի գնացքի միջին օրական վազքը հավասար է 416 կիլոմետրի, առաջադրանքով տրված 375 կիլոմետրի դիմաց. միջին-տեխնիկական արագությունը հավասար է 39,1 կիլոմետրի մեկ ժամում, նորմայով 35,2 կիլոմետրի փոխարեն: Ձմեռային աշխատանքների դաժան պայմաններում ընկ. Դոմբրովան այնպես հիանալի կերպով է վարում իր գնացքը, որ դեպոյի ամենալավագույն փորձառու մեխանիկներն անգամ իրենց հիացմունքն են արտահայտում:

Վիչուգի մանածագործուհիներ՝ Բոնդիրեվան, Պոդտոպլյաևան և Բոլշակովան, յուրաքանչյուրը նրանցից աշխատում է 884 դազգահի վրա և 3-ը միասին փոխարինում են 36 որակավոր մանածագործուհիների: Անցյալ տարվա ընթացքում նրանք գործեցին մոտ երեք միլիոն մետր քաթան:

Այն, ինչը երեկ նշանավոր մարդկանց շշմեցուցիչ ռեկորդ էր հաշվվում, այսօր



շարքային արտադրական ցուցանիշ է դարձել: Երբ Լենինգրադի «Կրասնույե Զնամյա» տրիկոտաժի գործարանի ստախանովականուհի ընկ. Ցենդրովան 15 մալեզային մեքենայի սպասարկեց, դա մեծ դեպք էր գործարանում, ռեկորդ: Այժմ գործարանի բոլոր բանվորուհիներն աշխատում են 20 դազգահի վրա:

Այսպիսի օրինակներ շատ են:

Արտադրության առաջավոր կանանց անդուլ, ռացիոնալիզատորական միտքը նորանոր հնարավորություններ է բացում այնպիսի մեխանիզմներում, որոնք առաջին հայացքից թվում էին, թե մինչև վերջին պտուտակն արդեն հայտնի է:

1941 թվի հունվարի 14-ին մենք թերթերում կարդացինք Իվանովյան մանածագործուհի, ստախանովականուհի՝ Ե. Գերասիմովայի մասին, որը 6 պլատտովյան մեքենաների վրա աշխատելու փոխարեն, աշխատում էր 12-ի վրա և կանոնավոր կերպով գերակատարում էր իր նորմաները: Իսկ արդեն փետրվարի 7-ին, թերթերը հաղորդեցին մի այլ Իվանովյան մանածագործուհի, կոմերիտուհի Օ. Պրոգոնովայի մասին, որը մեծ հաջողությամբ աշխատել

է արդեն 16 պլատովյան դազգահի վրա և սահմանել է նոր ռեկորդ— 320 մետր բարձրորակ սատին մեկ հերթափոխում, պլանով նախատեսված 133 մետրի փոխարեն։

Այդպիսի կանայք, որոնք գիտեն ժամանակի արժեքը, բանվորական օրվա յուրաքանչյուր րոպեն ռացիոնալ կերպով են օգտագործում, կան յուրաքանչյուր ձեռնարկության մեջ։

Մոսկվայի էլեկտրական լամպերի գործարանի կոմերիտուհի, բազմադազգահային՝ Անյա Միշինան յուրաքանչյուր րոպեում պատրաստում է 250 մետր վոլֆրամային թել։ Մոսկվայի երկրորդ ժամացուցային գործարանի երիտասարդ ստախանովականուհի Շուրա Պանիչկինան յուրաքանչյուր րոպեում պատրաստում է ժամացույցի 160 մասնիկ։ Մոսկվայի Գլխավոր փոստի կոմերիտուհի Ստարոստինան յուրաքանչյուր րոպեում տեսակավորում է 50 նամակ։

Աշխատանքի սոցիալիստական արտադրողականության և արտադրանքի բարձր որակի համար մղվող պայքարն անխզելիորեն կապված է խստագույն խնայողության, արտադրության կուլտուրայի, բանվորական



տեղի և գործիքների մաքրության համար մղվող պայքարի հետ։

Յուրաքանչյուր խնայված պետական կոպեկը, մետաղի յուրաքանչյուր կիլոգրամը, գործվածքի յուրաքանչյուր սանտիմետրը, բենզինի յուրաքանչյուր լիտրը, դա մեծ ավանդ է երկրի պաշտպանունակության և տնտեսական հզորության է՛լ ավելի ուժեղացման գործում։

Երբ Ստալինգրադի տրակտորային գործարանի դազգահավարուհի Ռայա Մամոնտովան և նալադչիցա Կլավա Ջասուխինան օրական հարթում են 1600—1800 մասնիկ (նորմայի 155—160 տոկոսը) և լվացման ու հղկման համար օգտագործում են 10 լիտր նավթի փոխարեն ընդամենը 6 լիտր, ապա նրանք խնայում են ժողովրդական հարստությունը և պետական մեծ գործ են կատարում։ Երբ կոմերիտուհի Օլյա Զիբրովան Ստալինգրադի տրակտորային գործարանի ձուլվածքա-վերանորոգման ցեխի աղջիկներին կազմակերպում է մետաղի լոմ հավաքելու, ապա նա արժանի է այն բանին, որպեսզի նրա օրինակին հետևեն մեր երկրի շատ և շատ կանայք։

Ստորև բերում ենք ժողովրդական տնտեսության մեջ կնոջ աշխատանքի տոկոսային հարաբերությունը և մանուկների սննդի սպասարկման բնագավառներից մեկի տվյալները, որոնք վառ կերպով պատկերացնում են սովետական իշխանության՝ կնոջ հանդեպ տածած հոգատար վերաբերմունքը։

**ՍՍՌՄ բանվորների և ծառայողների մեջ կանանց տոկոսի աճը**

| | | |
|---|---|---|
| *1929* | *թ.* | *27,2 տոկոս* |
| *1933* | *թ.* | *30,5 »* |
| *1937* | *թ.* | *35,4 »* |
| *1939* | *թ.* | *37,4 »* |
| *1940* | *թ.* | *38,4 »* |

**Կաթնախոհանոցների ցանցի աճը**

| | | |
|---|---|---|
| *1913 թ.* | *չկար* | |
| *1939 թ.* | *2023* | *կաթնախոհանոց* |
| *1940 թ.* | *2172* | *»* |

Ողջ երկրով-մեկ ծավալվեց արտադրության կուլտուրայի և մաքրության համար մղվող պայքարը։ Կեղտին անողոք կռիվ է



հայտարարված։ Կինը մաքրության համար մղվող այդ պայքարում պետք է գրավի առաջնակարգ տեղն աշխատավորների շարքում։ Աճում է հավաքարարուհիների դերը, որոնց աշխատանքն առաջ աննկատ էր։

Յուրաքանչյուր կինն արտադրության մեջ, սկսած դիրեկտորից, ցեխի վարիչից, վերջացրած շարքային բանվորուհով, հավաքարարուհով, պետք է զգա, որ նա տնտեսուհի է։ Մաքրությունը ցեխում, դազգահի մոտ, դա՝ տնտեսուհու պատվի գործն է, ճիշտ այնպես, ինչպես մաքրությունը տանը, կարգ ու կանոնն ընտանիքում նույնպես նրա պատվի գործն է։

***

Սովետական գյուղի կանայք նույնպես, Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ դուրս են եկել քաղաքական, կուլտուրական և ունևոր կյանքի լայնարձակ ճանապարհը։ Կանայք տիրապետում են կոմբայնին, տրակտորին, մեխանիկի, շոֆերի մասնագիտություններին։ ՄՏ կայանների մեխանիզատորական կազմի մեջ դեռ 1938 թվին կային ավելի քան 60.000 կանայք, 1940 թվին պատրաստված են 104.000 կին տրակտորիստներ։

Կոլխոզային դաշտերի հերոսների միջև,

որոնց հաղթանակներն այդպես վառ ցուցադրվեցին Համամիութենական Գյուղատնտեսական Ցուցահանդեսին, իրենց պատվավոր տեղը գրավում են կանայք։ 1940 թ. Համամիութենական Գյուղատնտեսական Ցուցահանդեսի 20.906 մասնակիցների թվում, որոնք Համամիութենական Գյուղատնտեսական Ցուցահանդեսի Գլխավոր Կոմիտեի կողմից պարգևատրված են Փոքր և Մեծ Ոսկե մեդալներով, 5769 հոգի կանայք են։

Աշխատանքը կոլխոզում կնոջը դարձրել է ինքնուրույն, անկախ։ «Միայն կոլխոզային կյանքը կարող է ոչնչացնել անհավասարությունը,— ասում է ընկեր Ստալինը,— և ոտքի կանգնեցնել կնոջը... Կոլխոզը մտցրեց աշխօր։ Իսկ ի՞նչ է աշխօրը։ Աշխօրի առջև բոլորը հավասար են — և՛ տղամարդիկ, և՛ կանայք։ Այժմ կինը, եթե նա աշխատում է և ունի աշխօր, նա ինքն իր գլխի տերն է...

Աշխօրերի միջոցով կոլխոզն ազատեց կնոջը և դարձրեց նրան ինքնուրույն»։

Ընկեր Ստալինի այս խոսքերը հանճարեղ պարզությամբ բացում են սովետական ազատագրված գեղջկուհու աշխատանքների



էնտուզիազմի աղբյուրները։ Մեր աչքերի առջև աճում են բերքի հիանալի վարպետների, անասնապահ կոլխոզնիկների նորանոր կադրերը, որոնք անասունների գլխաքանակի խոշոր աճ են ձեռք բերել։

Վրացական ՍՍՌ-ի Կասպյան ռայոնի Ոգվալիչալի գյուղի Ստալինի անվան կոլխոզի օղակավարուհի, Ոսկե Մեդալով պարգևատրված Սոֆիա Դիմիտրիևնա Կեսիչվիլին, 1938—39 թ. թ. ընթացքում հանել է մեկ հեկտարից շաքարի ճակնդեղի միջին տարեկան 899 ցենտներ բերք։ Չելյաբինսկի մարզի Շատրովյան ռայոնի Կալինինի անվան կոլխոզի խոզապահուհի Եվգենիա Իգնատևնա Բուտակովան, որը նույնպես պարգևատրվել է Մեծ Ոսկե Մեդալով, մեկ տարվա ընթացքում աճեցրել է յուրաքանչյուր մայր խոզից միջին հաշվով 30 խոճկոր։

Ամեն տարի սոցիալիստական աշխատանքի նորանոր հերոսուհիներ, սոցիալիստական գյուղատնտեսության նովատորներ են առաջ գալիս։ 1940 թվին ողջ երկրով-մեկ հռչակվեց Կուրսկի մարզի Կրասնոյարուժսկյան ռայոնի «Կոմսոմոլեց» կոլխոզի օղակավարուհի Դուսյա Բոգացկայայի ա-

նումը, որը հաճարի մինչ այդ չտեսնված բերք էր ստացել— 441 փութ՝ հեկտարից։

Ժիտոմիրի մարզի Ռադոմիշլյան ռայոնի Պետրովսկու անվան կոլխոզի օղակավարուհի Մարտա Սավվիշնա Խուդոլիյը մեկ հեկտարից 1940 թվին ստացավ 1284,1 ցենտներ կարտոֆելի բերք։

Գորկու մարզի Պոչինկովսկյան ռայոնի «Զարյա Կոմունիզմա» կոլխոզի օղակավարուհի Մարիա Զիկովան նույն տարում մեկ հեկտարից ստացավ 1793 ցենտներ կերի ճակնդեղ։

Կոլխոզային գյուղի առաջավոր կանայք արդյունաբերության ստախանովականուհիների օրինակին հետևելով փոխանակում են իրենց հարուստ փորձը, սովորեցնում են հետ մնացողներին։ Այսպես օրինակ, Մոսկվայի մարզում սիստեմատիկաբար գյուղ են գնում և դասախոսություններ են կարդում դաշտավարության ու անասնապահության 60 լավագույն կոլխոզնիկ-ստախանովականուհիներ։

Արտադրական և հասարակական աշխատանքը կոլխոզում չի խանգարում կոլտնտեսուհուն օրինակելի մայր և տնտեսուհի լինել։ Ահա, Մոսկվայի մարզի Լենինյան



ռայոնի «Կրասնի Օգորոդնիկ ի սադովնիկ» կոլխոզի կոլտնտեսուհի Օլգա Իվանովնա Սինիցինան. նա գյուղսովետի դեպուտատ է, կոլխոզի ռևիզիոն հանձնաժողովի անդամ, դաշտում լավ աշխատող և այս բոլորով հանդերձ, իր հինգ երեխաներին հոգատարությամբ դաստիարակող օրինակելի մայր է։

Այս հաջողությունները, որոնք ձեռք են բերել կոլխոզային գյուղի առաջավոր կանայք, կարող է նվաճել յուրաքանչյուր կոլտնտեսուհի։

Բերում ենք մայրության և մանկության պահպանությունը պատկերող մի քանի թվեր, որոնք բոլշևիկների պարտիայի քաղաքականության պերճախոս վկայությունն են հանդիսանում։

Մանկական և կանանց կոնսուլտացիաների թվի աճը

| | |
|---|---|
| 1913 թ. | 9 |
| 1928 թ. | 2151 |
| 1930 թ. | 5353 |

Մեր խոշորագույն հաջողություններից մեկը հանդիսանում է տնային տնտեսուհիների հասարակական ակտիվության աճը։ Նր-

րանցից շատերն ընտրված են որպես դեպուտատներ, շատերը՝ հասարակական աշխատանքներ են տանում սովետներում, կամավոր ընկերություններում, դպրոցներին կից ծնողական հանձնաժողովներում և այլն։

Տնտեսուհի-ակտիվիստուհիների շարժումը հատկապես մեծ թափ ստացավ երկաթուղային տրանսպորտում։ Երկաթուղայինների 270.317 կանայք մասնակցում են այդ շարժմանը։ Ավելի քան 44.000 ակտիվիստուհիներ ավարտել են երկաթուղային տրանսպորտի տեխնիկայի տիրապետման կուրսերը։ Ավելի քան 22.000 տնտեսուհիներ զբաղված են գնացքների շարժման հետ կապ ունեցող երկաթուղայինների համար տաք կերակուր մատակարարելով։ Ակտիվիստուհիները կազմակերպում են ճաշարաններ և սիստեմատիկաբար հետևում են նրանց աշխատանքին։ Նրանք կարգ ու կանոն և մաքրություն են մտցնում հանրակացարաններում, կայարաններում, գնացքներում։ Նրանք կուլտ-լուսավորական հսկայական



աշխատանք են կատարում։ Այս ակտիվիստուհիների օրինակները պետք է նախատինք հանդիսանան բոլոր այն կանանց համար, որոնք հոգում են միայն իրենց սեփական բարեկեցության մասին, անձնական շահերը հասարակական շահերից բարձր են դասում, նախատինք՝ բոլոր այն սպիտակաձեռք օրիորդների համար, որոնք խորշում են հասարակ, առօրյա աշխատանքից, «սև» աշխատանքից։ Ակտիվիստուհիների այս հիանալի անձնվեր աշխատանքը վկայում է կանացիական մասսաների կոմունիստական գիտակցության աճի մասին։

***

ՍՍՌՄ պաշտպանական հզորության ամրապնդումը սովետական կանանց հարազատ գործն է։ Գործարաններում և զավոդներում, կոլխոզային դաշտերում, հիմնարկ-ձեռնարկություններում կանայք իրենց համառ և անդուլ աշխատանքով ամրապնդում են սոցիալիստական հայրենիքի պաշտպանունակությունը։

Նրանցից շատերը հերոսական անձնազոհության օրինակներ ցուցաբերեցին

մարտական պայմաններում, կռիվների դաշտում, Խասան լճի շուրջը տեղի ունեցած մարտերի օրերին, Խալխին-Գոլի դեպքերի ժամանակ, Արևմտյան Ուկրաինայում և Արևմտյան Բելոռուսիայում, ֆիննական սպիտակ-գվարդիականների հետ ունեցած մարտերում: Իզուր չէ, որ մարտական ծառայությունների համար պարգևատրվածների ցուցակներում մենք կանանց բազմաթիվ անուններ ենք գտնում:

Որպես բժշկուհիներ, ֆելդշերներ և բըժշկական քույրեր, սովետական կանայք, չխնայելով իրենց կյանքը, թշնամու կրակի տարափի տակ, մարտական պայմաններում, բժշկական օգնություն էին ցույց տալիս մեր մարտիկներին: Նրանք վճռական մոմենտներին կանգնում էին մարտիկների շարքերը և նրանց հետ մեկտեղ հարձակումների անցնում: Օրինակ, այդպես վարվեց ֆիննական ճակատում, զինվորական բժշկուհի Վալենտինա Պլյուշչը:

Լենինգրադի հազարավոր աշխատավոր կանայք ֆինն սպիտակ-գվարդիականների հետ ունեցած կռիվների ընթացքում խնամում էին հիվանդանոցներում պառկած վիրավոր բանակայիններին, իրենց կամքով տալիս էին սեփական արյունը՝ սովետական



վիրավորված հրամանատարների և մարտիկների բժշկության համար:

Հետևյալ թվերը ցույց են տալիս բժշկության մեջ սովետական կնոջ գրաված պատկառելի տեղի պատկերը:

## Բժշկուհիների բանակի աճը

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1913 թ. | 1919 հոգի, կամ բոլոր բժիշկների | . . . . . | | 9,7 | տոկ. |
| 1930 թ. | 30.762 | » | » » | 44,9 | » |
| 1939 թ. | 72.648 | » | » » | 60,5 | » |

Մեր կանայք տիրապետում են հայրենիքի պաշտպանության համար անհրաժեշտ գիտելիքներին: Վերջին երկու ու կես տարիների ընթացքում 2 միլիոն 300 հազար կին հանձնել են «Պատրաստ սանիտարական պաշտպանության» կոմպլեքսի նորմաները, որպեսզի կռվի դաշտում կարողանան անհրաժեշտ օգնություն ցույց տալ հայրենիքին: 1940 թվին 15,4 հազար կին վերջացրել են բժշկական քույրերի կուրսերը, իսկ 55,9 հազար կին այժմ սովորում են այդ

կուրսերում, առանց կտրվելու արտադրությունից։

672,7 հազար կին հանձնել են «Պատրաստ աշխատանքի և պաշտպանության» կոմպլեքսի նորմաները։ Մեր երկրի շատ կանայք կատարելագործվելով ֆիզկուլտ տեխնիկայի մեջ, խոշոր հաջողություններ են ձեռք բերել այդ ասպարեզում, իրենց արժանավայել տեղը գրավելով ՍՍՌՄ ռեկորդսմենների շարքում։

Հարյուր հազարավոր կանայք մասնակցում են ռազմ-ֆիզկուլտուրային երթերին և դահուկային կրոսսներին։

Ներկա, ամեն տեսակի անսպասելիություններով հղի միջազգային դրությունը պահանջում է պաշտպանական աշխատանքներին մասնակցող կանանց շարքերն է՛լ ավելի ընդլայնել։ Յուրաքանչյուր սովետական կնոջ պարտքն է տիրապետել ռազմական և սանիտարական գիտելիքների անհրաժեշտ մինիմումին և միշտ պատրաստ լինել աշխատանքի և իր մեծ հայրենիքի պաշտպանության գործին։



## ԿԻՆԸ ՂԵԿԱՎԱՐ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐՈՒՄ

Ժողովրդից դուրս եկած հարյուր հազարավոր կանայք ուղարկված են պարտիական, սովետական, տնտեսական, պրոֆմիութենական և այլ ղեկավար աշխատանքների։ Սոցիալիստական կառուցման պատասխանատու պոստերին առաջադրված կանայք իսկական բոլշևիկ ղեկավարների լավագույն նմուշներ են ցուցահանում։

Կանանց կողմից գլխավորվող շատ հիմնարկներ դուրս են եկել Սովետական Միության առաջավոր ձեռնարկությունների շարքերը։ Նեվթյաննիկների համամիութենական մրցության ժամանակ առաջին տեղը գրավեց «Օրջոնիկիձենեվթ» տրեստի Բաքվի № 11 նավթահանքը։ Այդ հանքի ղեկին կանգնած է երիտասարդ կին Սակինա Կուլիևան։ Այդ մրցության մեջ երկրորդ տեղը գրավող նավթահանքի ղեկավարը նույնպես կին է — Աննա Պլեշկոն։

Եթե սկզբնական շրջաններում շատ հին նեվթյաննիկներ, ըստ սովորության, անվստահությամբ էին վերաբերվում կինպետների նկատմամբ, անգամ ամոթանք համարելով նրանց ենթարկվել, ապա այժմ

Կոլինայի և Պլեշկոյի հեղինակությունն արդեն անվիճելի է դարձել։

Շնորհիվ իրենց հաստատ կամքի, ինչպես նաև շնորհիվ պարտկազմակերպության օգնության, նրանք կարողացան դառնալ իսկական լիիշխան, մարտական միանձնյա ղեկավարներ։

Կոլխոզային գյուղի կանայք առաջ են քաշում իրենց շարքերից հիանալի կազմակերպիչների, մասսաների ղեկավարների, որոնց կոլխոզային կարգերը տվել են լայն հնարավորություններ՝ ընդարձակելու իրենց ընդունակություններն ու տաղանդները։

Ավելի քան 14.200 կանայք աշխատում են, որպես կոլխոզի նախագահներ և նրանց տեղակալներ։ Մոտ 40 հազար կանայք ղեկավարում են անասնաբուծական ապրանքային ֆերմաներ, 42,5 հազար հոգի հանդիսանում են անասնաբուծական և բուսամշակման բրիգադների բրիգադիրներ։

Մեր սոցիալիստական պառլամենտում— ՍՍՌՄ Գերագույն Սովետում— կան 228 հոգի կին-դեպուտատներ։ Միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն



Սովետներում (չհաշված Լատվիական ՍՍՌ; Լիտվական ՍՍՌ; Էստոնական ՍՍՌ և Ուկրայինական ՍՍՌ-ի Իզմայիլի և Չեռնովիցիի ռայոնները) կա 1470 կին-դեպուտատ։ Մոտ 500.000 կին հանդիսանում են տեղական սովետների դեպուտատներ։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ, ադրբեջանուհի-ուսուցչուհի Զիմնադ Ասլանովան հանդիսանում է ՍՍՌՄ Գերագույն Սովետի Ազգությունների Սովետի նախագահի տեղակալ։ Յակուտուհի Ս. Պ. Սիդորովան ղեկավարում է Յակուտական Ավտոնոմ Ռեսպուբլիկայի Գերագույն Սովետը։

Բեսարաբիայի, Հյուսիսային Բուկովինայի, Լատվիայի, Լիտվայի և Էստոնիայի ազատագրված կանայք ներգրավվում են պետական մեծ աշխատանքներում։ Մոլդավական ՍՍՌ-ի, Ուկրայինական ՍՍՌ-ի Իզմայիլի և Չեռնովիցիի ռայոնների, Լատվիական, Լիտվական և Էստոնական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների կողմից ՍՍՌՄ Գերագույն Սովետ ընտրված դեպուտատների կազմի 20 տոկոսը հանդիսանում են կանայք։

Ժողովրդի բարձր վստահությունը վայելող կին-դեպուտատները ցուցաբե-

րում են ժողովրդին անձնվիրաբար ծառայելու հիանալի օրինակներ։

«Մեծ և փոքր գործերն ստիպված ենք լինում մենք լուծել, ժողովրդի ներկայացուցիչներս և ծառաներս։ Շատ բան է մեզ, դեպուտատներիս տրված, այդ պատճառով էլ շատ բան է մեզնից պահանջվում»,— ասում է Ուկրաինական ՍՍՌ-ի Գերագույն Սովետի դեպուտատ, սննդարդյունաբերության ինստիտուտի ուսանողուհի, նախկին կոլտնտեսուհի Մարիա Գնատենկոն, որը Մարիա Դեմչենկոյի հետ միասին սկիզբ է դրել 500-ականների շարժմանը։

Մեր կանանց փառավոր հաջողությունները երջանիկ հայրենասիրական հպարտության զգացմունքներ են առաջ բերում. այդպիսի կանանց կարող էր դաստիարակել և աճեցնել՝ միայն Սովետական երկիրը, որտեղ բոլոր քաղաքացիներին ապահոված են՝ իր ընդունակությունների օգտագործման և զարգացման ամենալայն հնարավորությունները։

## ԿԻՆԸ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

Դեռ 1919 թվին Լենինն ասում էր. «Երկու տարվա ընթացքում Սովետական իշխանու-



թյունը Եվրոպայի հետամնաց երկրներից մեկում՝ կնոջ ազատագրման համար, նրան, «ուժեղ» սեռի հետ հավասարեցնելու համար արել է այնքան բան, որքան չեն արել 130 տարվա ընթացքում ողջ աշխարհի առաջավոր, լուսավորված «դեմոկրատական» ռեսպուբլիկաները՝ միասին վերցրած»։ (Ленин, Соч. т. XXIV, стр. 518, ռուսերեն)։

Այն պահից, երբ ասված են եղել այս խոսքերը, անցել է ավելի քան, երկու տասնյակ տարիներ։

Սակայն դեռ մինչև այսօր էլ կապիտալի երկրներում ուժի մեջ են հին օրենքները, որոնք ամրապնդում են կնոջ իրավազուրկ ստրկական դրությունը հասարակության մեջ և ընտանիքում և մինչև այսօր էլ աշխատավոր դասակարգի կնոջ վրա ծանրացած է կրկնակի ճնշումը։

Համաշխարհային երկրորդ իմպերիալիստական պատերազմն աշխատավոր կանանց նոր տանջանքներ և դժբախտություններ բերեց։ Պատերազմն է՛լ ավելի ուժեղ կերպով մերկացրեց դասակարգային հակասությունները և զգացնել տվեց կապիտալիստական երկրների աշխատավորուհուն՝ նրա յուրաքանչյուր քայլափոխին, որ նա չպետք է միամտաբար ընդունի բուրժուական կանանց

շարժման հետ, տիրող դասակարգերի կանանց հետ։

Օրինակ. ի՞նչ ընդհանուր բան կա լեդի Աստորի կամ լեդի Գամիլտոնի՝ որոնք հոգ են տանում էվակուացիայի ենթարկել իրենց ձիերը և ռմբապաստարաններ ստեղծել իրենց շների և կատուների համար, ի՞նչ ընդհանուր բան կա, ասա՛, այդ արիստոկրատական կանանց և այն կանանց միջև, որոնք մահաբեր ռումբերից իրենց երեխաներին պաշտպանելու և նրանց համար որևէ ապաստարան գտնելու հույսով ապարդյուն կերպով բաղխում են հարուստ վիլլաների դռները։ Ի՞նչ ընդհանուր բան կա բանկիրների կանանց, պատերազմի միջոցով վիթխարի գումարներ վաստակող ածխային, պողպատի, նավթային ձեռնարկությունների տերերի կանանց և այն պրոլետարուհիների միջև, որոնք չնչին գրոշների համար աշխատում են օրական 12—14 ժամ և կրում են իրենց ուսերի վրա պատերազմի բոլոր զրկանքներն ու ծանրությունները։

Աշխատավոր կնոջ համար ոչինչ չկա ընդհանուր և այն «գործչուհիների» հետ, որոնք, օրինակ, գտնվում են իսպանական «Կանացիական Ֆալանգա»-յի շարքերում,



որի ղեկավարուհի Պիլար Պրիմո դե Ռիվերան ելույթ ունենալով 1941 թ. հունվարի 14-ին Բարսելոնում տեղի ունեցած այդ կազմակերպության կոնգրեսում, հայտարարեց.

«Կանայք պետք է զբաղվեն միայն կանանց աշխատանքով և պետության կառավարման բարդ գործը պետք է թողնեն տղամարդկանց, որոնք հենց այդ բանին են կոչված։ Կանայք, անշուշտ, պետք է ենթարկվեն, որովհետև և կյանքում կնոջ մշտական դերը՝ տղամարդուն ենթարկվելն է»։

Պատերազմող երկրներում բուրժուազիան ձգտում է լայն կերպով օգտագործել կնոջ աշխատանքը՝ տղամարդուն ռազմական ձեռնարկություններում փոխարինելու համար, սակայն աշխատանքը կապիտալիստական ձեռնարկություններում չի ազատագրում կնոջը, այլ ընդհակառակն է՛լ ավելի է ստրկացնում նրան։ Այդպես էր նաև առաջին իմպերիալիստական պատերազմի տարիներին։ Իսկ պատերազմից հետո հարյուր—հազարավոր բանվորուհիներ նորից գործարանի դարբասներից դուրս գտնվեցին, ստանալով «ազատություն» ընտրություն կատարելու՝ սովի և պոռնկու-

թյան ու ինքնասպանության միջև։

Պատերազմն արագացնում է աշխատավոր կնոջ դասակարգային գիտակցության արթնացման և նրանց՝ ի մի համախմբելու պրոցեսը։

Այդ մասին են վկայում այնպիսի փաստերը, ինչպես օրինակ, կանանց ակտիվ մասնակցությունը 1941 թվի հունվարին Անգլիայում տեղի ունեցած Ժողովրդական Կոնվենտի նիստերում։ Այդ մասին են նաև վկայում կանանց բազմաթիվ կոնֆերանսները և ելույթները ԱՄՆ-ում՝ հանուն կանանց աշխատանքի պաշտպանության, բարձր ռազմական շահույթների դեմ, մասսաների կենսական մակարդակի իջեցման դեմ։

Այդ մասին են նաև վկայում կանանց բազմաթիվ սովյալ ցույցերը Նորվեգիայում, Հարավ-Սլավիայում և այլն։

Մարտի 8-ի օրը կապիտալիստական երկրների միլիոնավոր աշխատավորուհիների հայացքները կուղղվեն Սովետական Միությանը—միակ երկրին, որտեղ կինը տղամարդու հետ հավասար կառավարում է պետությունը և նոր կյանք է կառուցում։

Այդ օրը նրանց աչքերի առաջ, որպես



վառ, հուզիչ օրինակներ կծառանան նոր սովետական ռեսպուբլիկաները, որտեղ կանայք դեռ ոչ-վաղ անցյալում, աղքատության, իրավազրկության և մթության մեջ էին խարխափում, իսկ այժմ ակտիվ կերպով մասնակցում են քաղաքական կյանքին և ստեղծարար աշխատանքում, աշխատում են, աճում, որպեսզի շուտափույթ կերպով հասնեն իրենց ավագ սովետական քույրերին։

## ՉՀԱՆԳՍՏԱՆԱԼ ՁԵՌՔ ԲԵՐՎԱԾ ՆՎԱՃՈՒՄ-ՆԵՐՈՎ

Վիթխարի են այն հաջողությունները, որոնցով մեր երկրի կանայք դիմավորում են մարտի 8-ը։ Սակայն այդ օրը մենք ո՛չ միայն հանրագումարների ենք բերում մեր ձեռք բերածները։ Բոլշևիկյան պարտիան, մեր մեծ առաջնորդներ Լենինը և Ստալինը մեզ միշտ էլ սովորեցրել են չհանգստանալ ձեռք բերածով, չհոխորտալ հաղթանակներով։ Մարտի 8-ի օրը մենք խոսելու ենք ոչ միայն մեր հաղթանակների մասին, այլև հետագա խնդիրների մասին, միլիոնավոր կանանց մոբիլիզացիայի ենթարկելով, հանուն այդ խնդիրների կատարման։

Մարտի 8-ի օրը մենք այս տարի դիմավորում ենք Համամիութենական 18-րդ պարտ. կոնֆերանսի առիթով առաջացած հզոր արտադրական, քաղաքական վերելքի պայմաններում, և այդ օրը պետք է մենք անցկացնենք կոնֆերանսի կարևոր որոշումների կատարման նշանաբանի տակ, այն որոշումների, որոնք մեզ ցույց են տալիս մեր սոցիալիստական հայրենիքի տնտեսական և պաշտպանական հզորության ամրապնդման համար մղվող հետագա պայքարի ուղիները։

Սակայն ոչ մի ակնթարթ անգամ մենք չպետք է մոռանանք կապիտալիստական շրջապատման մասին, մեր երկրի սահմաններից այն կողմը բռնկված համաշխարհային իմպերիալիստական պատերազմի մասին։

Հիշելով պատերազմի ուժեղացած վտանգի մասին, սովետական կանայք պետք է համառորեն բարձրացնեն իրենց մոբիլիզացիոն պատրաստականությունը, էլ ավելի ակտիվորեն և եռանդով պայքարեն հանուն աշխատանքի բարձր արտադրողականության, հանուն աշխատանքի կարգապահության ամրապնդման։

Բոլոր առաջավոր սովետական կանանց



խնդիրն է օգնել ետ մնացող կանանց, օգնել խոսքով, գործով և անձնական օրինակով, նրանց իրենց հետևից տանել, անողոք կերպով մերկացնել՝ իրենց անձնական շահերը հասարակական շահերից բարձր դասող լոդրերին, գոփողներին, մորթապաշտներին։

Մեր երկրի յուրաքանչյուր կինը պետք է գիտենա, որ Ստալինյան Կոնստիտուցիայում արձանագրված՝ սովետական կանանց, ինչպես և ՍՍՌՄ բոլոր քաղաքացիների, մեծ իրավունքներն անխզելիորեն կապված են նաև մեծ պարտականությունների հետ, որոնք Ստալինյան Կոնստիտուցիան դնում է մեր երկրի յուրաքանչյուր քաղաքացու վրա։

Յուրաքանչյուր սովետական կնոջ մեջ պետք է դաստիարակել կոմունիստական գիտակցություն, հասարակական պարտքի զգացմունք, դժվարությունները հաղթահարելու անհողդողդ կամք, անսահման սեր դեպի իր հայրենիքը, այնպիսի սեր, որին ծանոթ չէ և ոչ մի զիջողություն թշնամու հանդեպ, որը հետ չի կանգնի և ոչ մի զոհի առջև, հանուն սոցիալիստական հայրենիքի, հանուն կոմունիզմի։

---

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԱՐՏԱԿԱՆ ԾՐԱԳԻՐԸ

Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ապրում են գյուղատնտեսության գարնանային աշխատանքների անմիջական նախօրյակը։ Ամենուրեք եռուն թափով նախապատրաստվում են գալիք գարնանային աշխատանքներին բոլշևիկորեն դիմավորելու. ավարտում են սերմերի զտումը, վերանորոգում են գործիքները, մեքենաները, դաշտ են փոխադրում գոմաղբ, իսկ մի շարք կոլխոզներ՝ Գորիսի, Ալավերդու, Իջևանի, Նոեմբերյանի, Մեղրու շրջաններում արդեն սկսել են գարնան վարի ու ցանքսի աշխատանքները։



Հասել է արդեն գյուղատնտեսական տարվա ամենապատասխանատու շրջանը՝ գարնանացանը։ Գյուղատնտեսական տարվա հաջողությունները, հատկապես գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բախտը հիմնականում որոշվում է գարնանային գյուղատնտեսական աշխատանքների հաջող կատարումով։

Ամեն ինչ կախված է նրանից, թե ինչպիսի՞ կազմակերպվածությամբ, լրիվ կենսագործելով գյուղատնտեսական գիտությունը, մեր պարտիական կազմակերպությունները և կոլխոզները կանցկացնեն գարնանային գյուղատնտեսական աշխատանքները։

Մեր պարտիական կազմակերպությունները, հողային օրգանները և կոլխոզվարչություններն ամենից առաջ, պետք է հաշվի առնեն այն կարևորագույն խնդիրները, որոնք դրված են այս տարվա գարնանային գյուղատնտեսական աշխատանքների առաջ։

Մեր ռեսպուբլիկայի կոլխոզների առաջ խնդիր է դրվում լայնացնել ցանքադաշտերի տարածությունները, այգեգործությունն ու պտղաբուծությունը, պայքար ծավալել գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների և

մասնավորապես հացահատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացման համար և, վերջապես, գործնականում կենսագործել ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1940 թ. սեպտեմբերի 6-ի որոշումը՝ Հայաստանում պտղա-խաղողագործության և տեխնիկական կուլտուրաների զարգացման միջոցառումների մասին։

Ահա, այս կարևորագույն խնդիրներն են դրվում մեր առաջ, այս տարվա գարնանային գյուղատնտեսական աշխատանքները կազմակերպելիս։ Այս խնդիրները բխում են մեր պարտիայի 18-րդ համագումարի կողմից, 3-րդ հնգամյակի վերջին տարվա համար գյուղատնտեսության բնագավառում սահմանված առաջադրանքից, մասնավորապես հացահատիկային կուլտուրաների գծով 7—8 միլիարդ փութ հացահատիկի համախառն բերք ստանալու, տեխնիկական կուլտուրաների՝ բամբակի, ծխախոտի, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի, պտուղների և խաղողի տարածությունների ընդարձակելու և նրանց բերքատվությունը բարձրացնելու խնդիրներից։

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետի և ՀԿ(բ)Պ Կենտկոմի փետրվարի 8-ի որոշմամբ սահ-



մանված այս տարվա գյուղատնտեսական աշխատանքների պլանը, հանդիսանում է մեր պարտիայի 18-րդ համագումարի կողմից գյուղատնտեսության համար տրված առաջադրանքի, մեր կոլխոզների կազմակերպական-տնտեսական ամրապնդման, կոլտնտեսականների ունևոր ու երջանիկ կյանքի հետագա բարձրացման ծրագիր։

Այս պլանի համաձայն, մեր կոլխոզներում այս տարի նորից ընդարձակվում են ցանքերի տարածությունները։ Անցյալ տարվա փաստացի ցանքսի համեմատ, այս տարի մենք լայնացնում ենք գյուղատնտեսական կուլտուրաների տարածությունը 33.450 հեկտարով։ Այդ թվում մասնավորապես լայնանում են տեխնիկական կուլտուրաների, կերաբույսերի, խաղողի և պտղատու ծառերի տարածությունները։ Բամբակի տարածությունն անցյալ տարվա հետ համեմատած, ընդարձակվում է 1100 հեկտարով, ծխախոտինը՝ 1700, շաքարի ճակնդեղինը՝ 600, խորդենունը՝ 350 հեկտարով և այլն։

Հատկապես ընդարձակվում են բազմամյա կուլտուրաների, խաղողի, պտղատու այգիների, թթենիների տարածությունները։

Ելնելով ՍՍՌՄ Ժողկոմսովետի և Համ. Կ(բ)Պ Կենտկոմի սեպտեմբերի 6-ի որոշումից, այս տարի պետք է տնկվի 3200 հեկտար խաղողի այգի, այսինքն՝ անցյալ տարվա համեմատ 1200 հեկտարով ավելի և 3500 հեկտ. պտղատու այգի, անցյալ տարվա համեմատ 1300 հեկտարով ավելի։

Խաղողի և պտղատու այգիների տարածության լայնացման բնագավառում, խոշոր պլաններ են տրվում Վաղարշապատի, Հոկտեմբերյանի, Ջանգիբասարի, Վեդու, Միկոյանի, Աշտարակի, Ալավերդու, Բերիայի անվան ռայոնների կոլտնտեսություններին և այս ասպարեզում մեծ պատասխանատվություն է դրվում վերոհիշյալ ռայոնների պարտիական կազմակերպությունների վրա։ Անհրաժեշտ է սիստեմատիկ ստուգել տնկիների, տնկարանների վիճակը, ապահովել նրանց խնամքն ու պահպանությունը, ժամանակին փոխադրել Հողժողկոմատի կողմից ներմուծված և կոլխոզներին հատկացված տնկիները։ Ժամանակին ձեռնարկել պլանտաժի աշխատանքներին և այն կոլխոզներում, որտեղ կառուցվում են ջերմոցներ, խաղողի մատների աճեցման համար, մինչև մարտի մեկը ավարտել ջերմոցների կա-



ռուցման աշխատանքները և հանձնել այն շահագործման։

Մեր պարտիական կազմակերպությունների առաջ խոշոր պարտականություն է դրվում հացահատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացման բնագավառում։ Այս ասպարեզում մեր ռեսպուբլիկան դեռ շատ հետ է մնում։ Մեզանից պահանջվում է իսկական բոլշևիկյան պայքար ծավալել հացահատիկային կուլտուրայի բերքատվությունը բարձրացնելու համար։

1941 թ. պլանով սահմանված է ստանալ հացահատիկի միջին բերք հեկտարից 12 ցենտներ, այսինքն, 3,7 ցենտներ յուրաքանչյուր հեկտարից ավելի, քան 1940 թ. ստացված միջին բերքատվությունից։ Այս առաջադրանքը հնարավոր է կենսագործել միմիայն այն դեպքում, երբ բոլոր կոլխոզների կողմից ճշտորեն կկենսագործվի առաջավոր ագրոտեխնիկան, ժամանակին կզտվեն սերմերը, ցանքսը կանցկացվի սեղմված ժամկետում, բարձր որակի սորտամրված սերմերով և կապահովվեն ցանքսի պարարտացումն ու նրա մշակումը։ Այս պայմաններում անպայման հնարավոր է ստանալ բարձր բերք։

Հացահատիկային կուլտուրաների բարձր բերք ստանալու գործում խոշոր նշանակություն ունի աշնանացան հացահատիկի տարածության ընդարձակումը։

Պլանով նախատեսված է 1942 թ. բերքի համար ընդարձակել աշնանացան հացահատիկային կուլտուրաների տարածությունը 12.700 հեկտարով, 1941 թվի ցանված փաստացի աշնանացանի համեմատ։ Աշնանացան հացահատիկի բերքը մեզ մոտ ամենուրեք բարձր է։ Նա ավելի քիչ է ենթակա երաշտի ու չորության կործանիչ հետևանքներին։ Մասնավորապես լեռնային և նախալեռնային շրջանների համար աշնանացանի տարածությունների լայնացումն այս ասպարեզում ունի խոշոր նշանակություն։ Պլանով նախատեսված է ընդարձակել նաև կարտոֆելի ու բանջարեղենի տարածությունը, նպատակ ունենալով մեր աշխատավոր լայն մասսաների կարտոֆելի ու բանջարեղենի պահանջների լրիվ բավարարումը։ 1940 թվի համեմատ կարտոֆելի ու բանջարեղենի ցանքսերի տարածությունը 1941 թվին ընդարձակվում է 4900 հեկտարով։

Մեր առաջավոր կոլտնտեսությունների փորձը ցույց է տալիս, որ կարտոֆիլի ու



բանջարեղենի բերքատվության բարձրացման և ապրանքային արտադրանքի ավելացման բնագավառում մենք ունենք անսպառ հնարավորություններ։ Մեր կոլտնտեսություններն այս տարի հիմնականում ցանում են «լորխ» տեսակի բարձր բերք տվող սերմացու կարտոֆիլ։ Բացի այդ, 1000 հեկտար կարտոֆիլ պետք է ցանվի ամառը, որը հսկայական նշանակություն ունի մեր տեխնիկական կուլտուրաների շրջանների համար։

Կարտոֆիլի ամառային ցանքը հնարավորություն է տալիս ստանալու 2 անգամ ավելի բերք, քան թե գարնանային ցանքսն է տալիս։ Նա միաժամանակ նպաստում է սերմերի բարելավմանը և հնարավորություն է տալիս ստանալու կարտոֆիլի կայուն բերք։ Այս տարի գարնանային աշխատանքները կազմակերպելիս մեծ ուշադրություն պետք է դարձնել բանջարեղենի, մասնավորապես պամիդորի, կաղամբի, վարունգի, գազարի կուլտուրաների ժամանակին ցանքսը կատարելու և մշակելու աշխատանքների վրա, որպեսզի հնարավորություն լինի ստանալու այս կուլտուրաների բնագավառում բարձր բերք։

Ուկրայինայի առաջավոր կոլտնտեսությունները հեկտարից ստանում են 160 տոննա պամիդոր, իսկ մեզ մոտ դեռ 15 տոննայից ավելի չեն ստանում։ Սակայն, մենք ունենք բանջարեղենի բարձր բերք ստանալու բոլոր պայմանները։

Առանձնակի ուշադրության է արժանի ՀՍՍՌ Ժողկոմսովետի և ՀԿ(բ)Պ Կենտկոմի կողմից սահմանված գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության առաջադրանքները։

Այդ պլանի համաձայն, 1941 թվին մեր կոլխոզները հիմնական գյուղատնտեսական կուլտուրաների գծով պետք է ստանան յուրաքանչյուր հեկտարից միջինը՝ հացահատիկ 12 ցենտներ, բամբակ— 20,5, շաքարի ճակնդեղ—210, ծխախոտ—8,5, խորդենի—140, արևածաղիկ—11, կտավատ—4,5, կարտոֆել—25 ցենտներ և այլն։

Որպեսզի պարզ լինի այս առաջադրանքի պատասխանատվությունը, այս ցուցանիշները կարելի է համեմատել անցյալ տարվա փաստացի դրության հետ և կստացվի, որ մենք պետք է այս տարի մեկ հեկտարից, անցյալ տարվա համեմատությամբ միջինը՝ 3,5 ցենտներ ավելի բամբակ



ստանանք, 3,7 ցենտներ հացահատիկ, 10 ցենտ. շաքարի ճակնդեղ, 1,6 ցենտ. կտավատ և այլն։

Մեր պարտիական կազմակերպությունների ու կոլխոզների հիմնական խնդիրն է՝ այժմյանից պայքար ծավալել գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերք ստանալու համար։ Ամեն ինչ կախված է գարնանային աշխատանքների կազմակերպված ու հաջող անցկացնելուց։

Ագրոտեխնիկական կանոնների լրիվ կենսագործումը, ցանքի սեղմ ժամանակին անցկացումը, բարձր որակի սերմացուն, պարարտանյութերի լրիվ օգտագործումը, պայքարը վնասատուների և մոլախոտերի դեմ, աշխատանքային բարձր կարգապահությունը, հանդիսանում են հիմնական նախադրյալները գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերք ստանալու գործում։ Այս տարվա գյուղատնտեսական գարնանային աշխատանքները հաջող անցկացնելու նպատակով, անհրաժեշտ է լրիվ հաշվի առնել անցյալ տարվա այս ասպարեզում թույլ տրված սխալներն ու թերությունները։

Անցյալ տարվա գյուղատնտեսական աշխատանքների ամփոփումը ցույց տվեց, որ

մեր սոցիալիստական գյուղատնտեսությունն ունի բոլոր անհրաժեշտ միջոցները նրա համար, որպեսզի բոլոր տեսակի կլիմայական պայմաններում հնարավոր լինի ստանալ գյուղատնտեսական կուլտուրաների կայուն ու բարձր բերք, աշխատանքի ճիշտ կազմակերպման, տեխնիկայի ու ագրոտեխնիկական գիտության լրիվ օգտագործման միջոցով:

Անցյալ տարվա կլիմայական պայմանները շատ աննպաստ էին գյուղատնտեսության, ցանքսի մշակման և կուլտուրաների բերքատվության բարձրացման համար: Ցուրտ և երկարատև գարունն ու վաղահաս աշունը բացասաբար ազդեցին ցանքսերի վրա:

Անշուշտ, առանց այնպիսի տեխնիկայի, որով հագեցված են մեր կոլխոզները, առանց ագրոտեխնիկական միջոցառումների բարձրացման, դժվար թե հնարավոր լիներ չեզոքացնել կլիմայական պայմանների կործանիչ ազդեցությունը գյուղատնտեսական կուլտուրաների վրա:

Շնորհիվ դրա, մեր առաջավոր կոլխոզները գյուղատնտեսության կուլտուրաների տարածությունների ընդարձակման, բերքա-



տվության բարձրացման և անասնապահության հետագա ամրապնդման բնագավառում ձեռք բերին նորանոր նվաճումներ:

Այն շրջանները և կոլխոզները, որոնք ժամանակին հաշվի առան կլիմայական պայմանները, ճիշտ կենսագործեցին ագրոտեխնիկական գիտությունը, ճշտորեն կազմակերպեցին աշխատանքը, ստացան բարձր բերք, մասնավորապես բամբակի, ծխախոտի, խաղողի, պտուղի և այլ կուլտուրաների ասպարեզում:

Ընդհակառակը, մի շարք ռայոններ ու կոլխոզներ, մասնավորապես հացահատիկի, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի, խոզանացան կուլտուրաների, կտավատի բնագավառում, որտեղ ժամանակին չէր ապահովված ցանքսի մշակումը, ստացան շատ ցածր բերք:

Մասնավորապես ցածր բերք ստացան հացահատիկային կուլտուրաներից, կարտոֆիլից ու կտավատից Ապարանի, Ալագյազի, Ազիզբեկովի, Մարտունու, Ղուկասյանի շրջանները, որովհետև այս շրջաններում գարնանացանի աշխատանքները ձգձգվեցին մինչև հունիսի 30-ը, այսինքն՝ մոտ 2

ամիս։ Այս շրջաններում միանգամայն անբավարար օգտագործվեց քաշող ուժը, իսկ մեր բոլոր լեռնային ու նախալեռնային շրջաններն ունեն այնքան լծկան, որ լրիվ օգտագործելիս, միանգամայն հնարավոր է ամենասեղմ ժամկետում անցկացնել գարնանային գյուղատնտեսական աշխատանքները։

Ապարանի շրջանը հնարավորություն ունի միմիայն քաշող ուժով, նույնիսկ առանց ՄՏ Կայանի օգնության, գարնանացանն անցկացնել 15—20 օրվա ընթացքում։ Իսկ անցյալ տարի Ապարանում այդ աշխատանքները ձգձգվեցին երկու ամիս։ Սիսիանի շրջանն իր քաշող ուժով գարնանացանը կարող է կատարել 7—8 օրվա ընթացքում։ Նույն դրության մեջ են նաև մյուս շրջանները։ Սակայն, քաշող ուժի թերագնահատման, նրանց վատ խնամելու, գութանների պակասության կամ չվերանորոգվելու պատճառով, քաշող ուժի գերակշռող մասը անցյալ տարվա գյուղատնտեսական գարնանային աշխատանքներին չմասնակցեց։ Այս թերությունն այս տարի պետք է հիմնովին վերացվի։ Անհրաժեշտ է լավ խնամք կազմակերպել և ուժեղ կեր տալ



քաշող ուժին, վերանորոգել գյուղատնտեսական բոլոր գործիքները, ինվենտարը, այժմյանից լրիվ պատրաստել բոլոր գործիքները գարնանացանի համար։ Մի շարք կոլխոզներ անցյալ տարի խոշոր թերություններ ունեցան սերմացուի զտման ասպարեզում։ Մարտունու, Բասարգեչարի, Ազիզբեկովի շրջաններում եղան դեպքեր, երբ ցանքը կատարվեց առանց սերմացուն ստուգելու, նրա որակը, ծլունակությունն ստուգելու։ Հետևանքը եղավ այն, որ այդ տարածությունները բերք չտվին։ Պետք է հաշվի առնել այս թերությունները ևս։ Սերմացուն վճռական նշանակություն ունի բերքատվության բարձրացման գործում։ Ամենակարճ ժամկետում անհրաժեշտ է բոլոր կոլխոզներում ավարտել սերմացուի զտումը, ստուգել նրա որակը, ծլունակությունը և լրիվ ապահովել գարնանացանը, բարձր որակի սերմերով։

Չնայած նրան, որ արդեն մի շարք շրջաններում (Գորիս, Միկոյան, Ալավերդի, Իջևան) սկսվել են գարնանացանի աշխատանքները, սակայն Ղուկասյանի, Բասարգեչարի, Ապարանի, Ղարաբաղլարի շրջանները դեռ չեն ավարտել սերմի առանձնացումը և զտման աշխատանքները։ Հանկա-

պես հետ են մնում Ամասիայի, Ալագյազի, Ազիզբեկովի, Սևանի և Ն. Բայազետի շրջանները։ Պարտիական կազմակերպությունները և կոլտնտեսությունները վերոհիշյալ շրջաններում անմիջապես պետք է վերացնեն այս թերությունները, գարնանացանն առանց ձգձգումների անցկացնելու նպատակով։ Հատուկ ուշադրություն պետք է դարձնել կարտոֆիլի, բանջարեղենի, ծխախոտի սերմերով ապահովելու և ժամանակին հայթայթելու աշխատանքների վրա։ Հատկապես այժմ խոշոր աշխատանք պետք է կազմակերպել բանջարանոցի ու ծխախոտի ջերմոցները ժամանակին ապահովելու վրա, որպեսզի հնարավոր լինի ժամանակին կազմակերպելու սածիլային աշխատանքները և ծխախոտի ու բանջարեղենի ժամանակին ցանքսը։

Բերքատվության բարձրացման գործում վճռական նշանակություն ունի գյուղատնտեսական կուլտուրաների պարարտացումը։ Գարնան համար պլանով նախատեսված է դաշտ դուրս բերել 800 հազար տոննա գոմաղբ։ Սակայն մինչև հիմա դաշտ է դուրս բերված ընդամենը 164 հազար տոննա կամ 20,5 տոկոսը, հատկապես հետ են



մնում Աղինի, Արթիկի, Ղափանի, Գորիսի, Սևանի, Ախտայի և Վաղարշապատի շրջանները։ Այժմ ամենահարմար ժամանակն է պարարտանյութերի փոխադրման։ Կոլխոզի տրանսպորտն ազատ է, բացի այդ, պարարտանյութ պետք է դաշտ դուրս բերվի մինչև վարն սկսելը։ Եթե մեր կոլխոզներում յուրաքանչյուր զույգ եզ մի սայլ գոմաղբ դաշտ դուրս բերի, տաս օրվա ընթացքում մենք հնարավորություն կունենանք դաշտ դուրս բերել մինչև երկու միլիոն տոննա գոմաղբ։

Անբավարար են ընթանում հատկապես Վաղարշապատի, Զանգիբասարի, Հոկտեմբերյանի և Դուզքենդի շրջաններում հանքային պարարտանյութերի փոխադրման աշխատանքները։ Սելխոզսնաբի պահեստներում հարյուրավոր տոննաներով կուտակված են հանքային պարարտանյութեր։ Անհրաժեշտ է գարնանային աշխատանքների մինչև եռում շրջանի սկիզբը, կազմակերպել հանքային պարարտանյութերի և գոմաղբի փոխադրման գործը։ Այս տարի խոշոր ուշադրություն պետք է դարձնել նաև վարի որակի վրա։ Անպայման կատարել խոր վար 22—25 սմ.-ից ոչ-պակաս խորությամբ,

ոչ մի դեպքում չպետք է թույլ տալ հիմնական վարի համար օպտագործելու արորը, որը հանդիսանում է բերքատվության անկման հիմնական պատճառներից մեկը։

Պետք է հաշվի առնել այն, որ մի շարք շրջաններ թերակատարեցին ցրտահերկի պլանը։ Այս հանգամանքը կարող է անդրադառնալ նույնպես բերքատվության վրա՝ եթե գարնանը ձեռք չառնվեն համապատասխան միջոցներ։ Անհրաժեշտ է ամենից առաջ կատարել վաղ վար, այն հաշվով, որպեսզի հիմնական տեխնիկական կուլտուրաները— բամբակը, ծխախոտը, ճակնդեղը ցանեն վաղօրոք լավ մշակված դաշտերի և առաջին հերթին ցրտահերկի վրա։

ՄՏ Կայանները վճռական նշանակություն ունեն գյուղատնտեսության աշխատանքների կազմակերպման գործում և նրանք հանդիսանում են իսկական գիտական-ագրոտեխնիկական կանոնների կենսագործողները կոլխոզներում. նրանց աշխատանքների ճիշտ կազմակերպումից շատ բան է կախված՝ գյուղատնտեսության բնագավառում նվաճումներ ձեռք բերելու ասպարեզում։ Անցյալ տարի մեր մի շարք մեքենատրակտորային կայաններ, հատկապես



Ազիզբեկովի, Ղուկասյանի, Ապարանի, Սիսիանի, Կրասնոսելսկի շրջանների ՄՏԿ-ները շատ վատ աշխատեցին։ Անբավարար անցկացվեց տրակտորների վերանորոգումը։ Այդ ՄՏԿ-ներում տրակտորային պարկի մոտ 25%-ը լրիվ չմասնակցեց գյուղատնտեսական աշխատանքներին։ ՄՏԿ-ները հատկապես թերակատարեցին հիմնական ագրոտեխնիկական ձեռնարկումները՝ ցրտահերկը, կուլտիվացիան, խոզանի երեսվարը և այլն։ ՄՏ Կայաններն այս տարի ավելի կազմակերպված են դիմավորում գարնանացանին, գյուղատնտեսական աշխատանքներին։ Տրակտորային ընթացիկ նորոգման պլանը կատարված է առ. 20/II-ի 139,8%-ով, մինչև ամսի 25-ը կավարտվի նաև կապիտալ վերանորոգման պլանը։ Սակայն այս ասպարեզում միանգամայն անբավարար են աշխատում Ազիզբեկովի ՄՏ կայանը, որը տրակտորների հիմնական վերանորոգման պլանը կատարել է 43%-ով, Կրասնոսելսկի ՄՏԿայանը՝ 40%-ով, Վեդու ՄՏԿայանը՝ 55%-ով և Ստեփանավանի ՄՏ Կայանը՝ 60%-ով։ Հետ են մնում նաև տրակտորների ընթացիկ վերանորոգման գծով՝ Ղուկասյանի ՄՏԿայանը՝ 64%, և Ապարանի ՄՏԿայանը՝ 89,5%։

Վերոհիշյալ ՄՏԿ-ների դիրեկտորները, ինժեներա-տեխնիկական պերսոնալը և պարտիական կազմակերպությունները չկատարեցին իրենց պարտականությունները՝ 18-րդ պարտկոնֆերանսի բացման օրը տրակտորների ռեմոնտի պլանը լրիվ կատարելու առթիվ։ Անհրաժեշտ է շտապ լիկվիդացիայի ենթարկել այս թերությունը և կարճ ժամանակամիջոցում ավարտել տրակտորների և մյուս գործիքների ու մեքենաների վերանորոգման պլանը։ Խիստ հսկողություն պետք է սահմանել նաև վերանորոգման որակի վրա, որպեսզի չստացվի այնպիսի դրություն, երբ անցյալ տարի մի շարք ՄՏԿ-ներ վատ որակի վերանորոգում անցկացնելու պատճառով, ստիպված էին գարնանացանի եռուն շրջանում, օրերով կանգնեցնել վերանորոգման համար տրակտորների մի մասը և այսպիսով ձգձգել գարնանացանի աշխատանքները։ Այժմյանից պետք է ապահովել կադրերի լրիվ պահանջը, հաշվի առնել և համաքագրել բոլոր տրակտորիստներին, անցկացնել նրանց վերավորակավորում։ Ապահովել տրակտորների երկամենային աշ-



խատանքը, պետք է նախապատրաստել շրջիկ արհեստանոցներ, տրակտորային բրիգադները լրիվ ապահովել անհրաժեշտ մասերով ու գործիքներով։ Լավ կազմակերպել տրակտորիստների կուլտուրական ու կենցաղային սպասարկման գործը, այն հաշվով, որպեսզի ոչ մի դեպքում տրակտորիստը պարապուրդ չտա գարնանային աշխատանքների ընթացքում։

ՄՏԿայանները պետք է լրիվ ապահովեն իրենց վառելանյութով և կազմակերպեն վառելանյութի փոխադրման գործը։

Կալինինոյի, Ստեփանավանի, Միկոյանի ՄՏ Կայանների անբավարար աշխատանքի շնորհիվ վառելանյութի փոխադրման հունվար ամսվա պլանը մեր ռեսպուբլիկայում կատարվեց ընդամենը 81%-ով և 90 տոննայից ավելի վառելանյութի լիմիտ մեր ՄՏԿ-ները կորցրին։

Շատ վատ է ընթանում նաև փետրվար ամսվա վառելանյութերի փոխադրման գործը մի շարք ՄՏԿ-ներում։ ՄՏԿ-ների դիրեկտորներն անձամբ պատասխանատու են վառելանյութի փոխադրման պլանը լրիվ ապահովելու համար։ Անհրաժեշտ է այս նպատակի համար օգտագործել նաև կոլխո-

զային տրանսպորտը և կազմակերպել վառելանյութի փոխադրման գործն այն հաշվով, որպեսզի ոչ միայն կատարվի փետրվար ամսվա պլանը, այլև փետրվար ամսին փոխադրվի վառելանյութ նաև մարտ ամսվա հաշվին, որովհետև քանի դեռ գարնանային աշխատանքների եռուն շրջանը չէ, պետք է լրիվ օգտագործվի այս ժամանակամիջոցը մեր ՄՏԿ-ների ու պարտիական կազմակերպությունների կողմից, այժմվանից բավարարելու ՄՏ Կայանների գարնանային աշխատանքների համար գործադրվող վառելանյութի լրիվ պահանջը։

Մեր պարտիայի ու կառավարության կողմից ընդունված գյուղատնտեսական մթերքների մթերումների քաղաքականության փոփոխությունների, կոլտնտեսության հանրային հողերը շռայլումից պաշտպանելու, հանրային անասնապահության զարգացման միջոցառումների մասին և այլ մի շարք որոշումները, որոնք ուղղված են կոլտնտեսության արտելային տնտեսության զարգացման, նրա լայնացման, կոլտնտեսականների տնտեսական ու կուլտուրական կյանքի մակարդակի բարձրացման համար, նոր թափ առաջացրին կոլտնտեսականների մեջ,



արտադրողականության բարձրացման, աշխատանքային կարգապահության ամրապընդման գործում։ Հատկապես պետք է նշել ՀամԿ(բ)Պ Կենտկոմի և ՍՍՌՄ Ժողկոմսովետի 1940 թվի դեկտեմբերի 31-ի որոշումը, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնապահության մթերատվության բարձրացման համար, Ուկրայինայի կոլտնտեսականներին լրացուցիչ վարձատրություն սահմանելու մասին։

Այդ որոշումը հրճվանքով ու մեծ խանդավառությամբ ընդունվեց մեր Միության բոլոր կոլտնտեսականների կողմից։ Այդ որոշումը վերացնում է աշխատանքի մեջ դիմազրկությունը, կոլտնտեսականների վարձատրության հավասարեցումը։

Պարտիայի և կառավարության այս որոշումն ուղղված է կոլխոզներում վարձատրության սոցիալիստական սկզբունքը կիրառելու գործին։ Յուրաքանչյուր կոլտնտեսական կստանա վարձատրություն ըստ իր աշխատանքի որակի ու կարողության։ Վարձատրության նախկին կարգը չէր խրախուսում, չէր շահագրգռում առաջավոր կոլտնտեսականներին։ Այժմ կոլտնտեսականները կոլտնտեսությունում կաշխատեն ավելի

նվիրված և բարձր արտադրողականությամբ, որովհետև նրանք կվարձատրվեն իրենց աշխատանքի քանակական ու որակական ցուցանիշներով։ Այս որոշումը նոր թափ է ստեղծում գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների տարածությունների ընդարձակման, բերքատվության, անասնապահության մթերատվության բարձրացման համար։

Անշուշտ, այս որոշումը հավանաբար կտարածվի նաև մյուս ռեսպուբլիկաների կոլտնտեսությունների վրա։ Կոլխոզներում այս տարի աշխատանքի կազմակերպման ժամանակ պետք է հաշվի առնել բոլոր աշխատանքային ռեզերվները և նրանց կցել բրիգադներին ու օղակներին։ Առանց բրիգադին ու օղակին ամրացնելու ոչ մի կոլտնտեսական չպետք է մնա։ Հատուկ ուշադրություն պետք է դարձնել բրիգադի և օղակի կոմպլեկտավորմանը։ Պետք է լիկվիդացիայի ենթարկել մի շարք կոլխոզներում գոյություն ունեցող հոսունությունը, երբ կոլտնտեսականը մի բրիգադից մի ուրիշ բրիգադ, մի օղակից մի ուրիշ օղակ է փոխադրվում։ Անհրաժեշտ է մինչև մայիսի մեկը առանձնացնել և ամրացնել բրիգադներին ու օղակներին հողային տարածու-



թյունները, ինվենտարը և քաշող ուժը։ Նույն ժամանակամիջոցում պետք է ավարտել արտադրական պլանների, արտադրական նորմաների կազմումը և քննարկումը կոլխոզների ընդհանուր ժողովներում։

Անհրաժեշտ է կազմել տրակտորային պարկի և քաշող ուժի գարնանային աշխատանքների գրաֆիկն այն հաշվով, որպեսզի հնարավոր լինի հացահատիկային կուլտուրաների գարնանացանն անցկացնել 7—8 աշխատանքային օրվա ընթացքում։

Արտադրական պլանների կազմման, քննարկման գործում, պարտաշրջկոմը, հողբաժինը, ՄՏ Կայանը պետք է գործոն օգնություն ցույց տան կոլխոզներին։

Անհրաժեշտ է լուրջ ուսումնասիրել կոլխոզի արտադրությունը, իմանալ նրա առանձնահատկությունը, ուսումնասիրել ու ճանաչել մարդկանց, ճշտորեն կատարել բրիգադիրների, օղակավարների ընտրությունը և կոլտնտեսականների դասավորումն ըստ աշխատանքային բնագավառների։ Անհրաժեշտ է հատուկ ուշադրություն դարձնել ագրոպերսոնալի վրա։ Այժմ մեր բոլոր կոլխոզները պահանջում են ունենալ իրենց սեփական գյուղատնտեսը։ Գյուղատնտեսի

վճռական դերը կոլխոզային արտադրության բարձրացման գործում անժխտելի է։ Պետք է ստեղծել նրա համար բոլոր պայմանները, ամրապնդել նրան մի որևէ կոլխոզի, ըստեղծել նրա համար նյութական ու կենցաղային լիակատար պայմաններ և հնարավորություն տալ նրան, որպեսզի նա ագրոտեխնիկական գիտության լրիվ օգտագործման միջոցով բարձրացնի գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, անասնապահության մթերատվությունը և ընդարձակի կոլտնտեսային արտելային տընտեսությունը։

ՀՍՍՌ Ժողկոմսովետի և ՀԿ(բ)Պ Կենտկոմի կողմից սահմանված 1941 թվի գյուղատնտեսական աշխատանքների պլանը մարտական ծրագիր է գյուղատնտեսության հետագա զարգացման, կոլտնտեսային ունևոր ու երջանիկ կյանքի բարձրացման համար։ Պարտիական կազմակերպությունները լրիվ օգտագործելով գյուղատնտեսության առաջավորների փորձը, գյուղատնտեսության սոցիալիստական գիտությունը, լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցումն ու հարվածայնությունը, արտադրական նոր վերելք ստեղծելով կոլտնտեսություններում, բարձրացնելով աշխատանքային կարգապահությունը, պետք է անթերի, սեղմ ժամկետում անցկացնեն այս տարվա գյուղատնտեսական գարնանային աշխատանքները և լրիվ ապահովեն սահմանված պլանի կատարումը, որը վճռում է մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության հետագա զարգացումը և մեր կոլխոզների կազմակերպչական-տնտեսական հետագա ամրապնդումը։



---

Պատասխանատու խմբագիր՝

Դ. Բ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

